Պրոլետարներ բոլոր յերկրների,
միացե՛ք!

ՀԿ(բ)Կ Կենտկոմի կուլտ. պրոպագանդայի
յեվ ագիտացիայի բաժին

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

## № 3 (10)

ՀԿ(բ)Կ Կ.Կ. հրատարակչություն «Խ. Հայաստան»
ՅԵՐԵՎԱՆ—1937

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



---

Պատ. խմբագիր՝ ԳԻՆՈ ՇԱՂԳԱՄԱՆ
Պատ. քարտուղար՝ Գ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ
Սրբ.՝ Մ. Սուրյան և Մ. Գևորգյան
Հրատարակություն № 6, Պատվեր № 131
Գլավլիտի լիազոր՝ № 2252
Տիրաժ 10,177
Պետհրատի տպարան, Յերևան

Ա. ՍՏԵՑԿԻՑ

# ՔԱՂԱՔԱԿԱՆ ԴԱՍՏԻԱՐԱԿՈՒԹՅԱՆ ՆՈՐ ԴԱՍԱՐԱՆԸ

*ԽՍՀՄ-ի քաղաքացիներն ուզում են լավ գիտենալ, յուրացնել իրենց հայրենիքի հիմնական օրենքը, վորն ամրացնում է սոցիալիստական հասարակարգը և սահմանում է աշխարհիս առաջին սոցիալիստական պետության կարգերը:*

*Ամենուրեք տեղի յեն ունենում բազմամարդ ժողովներ՝ նվիրված Խորհուրդների Համամիութենական 8-րդ Արտակարգ Համագումարի արդյունքներին, նոր Սահմանադրությանը և Խորհուրդների Համագումարում ընկեր Ստալինի տված զեկուցմանը: Յելույթները, հարցերը, տրված տոմսերը վկայում են ԽՍՀՄ-ի քաղաքացիների*

քաղաքական ակտիվության աճումը, նրանց կենդանի հետաքրքրությունը Սահմանադրության նկատմամբ:

Կուսակցության անդամները, թեկնածուները և համակրողները սկսել են կուսակցական ժողովներում և խմբակներում հիմնավորապես ուսումնասիրել Սահմանադրությունը և ընկեր Ստալինի զեկուցումը: Նորն ու նշանակալիցն այն է, որ մի շարք քաղաքների ձեռնարկություններում (Լենինգրադում, Մոսկվայում, Սվերդլովսկի մարզում, Ստալինգրադում) անկուսակցական բանվորներից ստեղծվում են հարյուրավոր ու հազարավոր խմբակներ՝ Սահմանադրությունն ուսումնասիրելու համար: Նույնպիսի խմբակներ են ստեղծվում նաև կոլտնտեսային ակտիվում: Երևում է, որ ԽՍՀՄ-ի աշխատավորները չեն բավարարվում Սահմանադրության մասին ընդհանուր գաղափար կազմելով: Նրանք ուզում են ավելի հիմնավորապես, խորապես ըմբռնել նրա բովանդակությունը, իմաստավորել հասարակական ու պետական այն կարգերի կառուցվածքը, որը գրի է առնված Սահմանադրության մեջ:

Մասսաների ցուցաբերած այդ կենդանի



հետաքրքրությունը հիմնական օրենքին հասկանալի է: Չէ՞ որ ստալինյան Սահմանադրությունը նոր էպոխա է բացում մարդկային պատմության մեջ:

Մեր երկրում հիմնականում ավարտվեց պատմական մի ամբողջ ժամանակաշրջան՝ կապիտալիզմից սոցիալիզմին անցնելու շրջանը: Այդ շրջանը չափվում է ընդամենը երկու տասնամյակով՝ համաշխարհային պատմության տեսակետից կարճ ժամանակամիջոց: Սակայն պատմության մեջ թերևս դեռ չի եղել իրադարձությունների այնպիսի լարում, պայքարի ու ստեղծարար աշխատանքի այնպիսի վիթխարի ծավալում, բովանդակության այնպիսի հարստություն: Այժմ մենք դուրս ենք գալիս այդ շրջանից, մենք անցել ենք սոցիալիստական հասարակության շեմքից: «Մեր խորհրդային հասարակությունը հասավ այն բանին, որ նա արդեն հիմնականում իրականացրեց սոցիալիզմը, ստեղծեց սոցիալիստական հասարակարգ, այսինքն իրականացրեց այն, ինչ որ մարքսիստների մոտ այլ կերպ կոչվում է կոմունիզմի առաջին կամ ստորին փուլ» (Ստալին):

Այդպիսով սոցիալիստական հասարակար-

դը հաստատող խորհրդային նոր Սահմանադրությունը միևնույն ժամանակ նշում է անցումը մի եպոխան մյուսից բաժանող պատմական մեծ սահմանից: Պարզ է, որ տեղի ունեցած փոփոխությունները գիտակցելու ձգտումը, ձեռք բերվածի նշանակությունը հասկանալու, հասարակական նոր կարգերն ըմբռնելու ձգտումն առանձնապես ուժեղ է բոլորի մեջ: Այդ ձգտումը, քաղաքական այդ ակտիվությունը հսկայական նշանակություն ունեցող փաստ է:



Սահմանադրության կապակցությամբ կատարվելիք քաղաքական աշխատանքի առանձնահատկությունը բնորոշվում է նրանով, որ խոսքը վերաբերում է այն նոր հասարակարգին, որն առաջին անգամն իրականացվել է պատմության մեջ և հանդիսանում է աշխատավոր մարդկության կողմից մղվող ազատագրական պայքարի բարձրագույն գագաթնակետը: Նոր Սահմանադրությունը և ընկեր Ստալինի զեկուցումն առաջադրում են ժամանակակից եպոխայի արմատական պրոբլեմները:

Յեվ մեր յերկրի աշխատավոր մասսանե-



րը ձգտում են գիտակցել սոցիալիզմի այն հսկայական շենքը, վորը նվաճվել է համառ պայքարում, վորը կառուցվել է իրենց՝ աշխատավորների ուժերով, Լենինի-Ստալինի կուսակցության ղեկավարությամբ:

Այստեղից բխում է քաղաքական աշխատանքի յերկրորդ առանձնահատկությունը: Այժմ սոցիալիզմը հեռավոր նպատակ, մի վերացական գաղափար, աբստրակտ հասկացողություն չի ներկայացնում: Սոցիալիզմն այժմ իրականություն է: Սոցիալիզմի գաղափարը մարմնացած է մեր յերկրում, նրա հասարակական ու պետական կառուցվածքում, և այստեղ ստացել է իր հետագա ու ամենալիակատար զարգացումը: Սոցիալիզմի թեորիան, Մարքսի և Ենգելսի, Լենինի և Ստալինի հանճարեղ նախատեսումները կոնկրետ կերպով կենսագործվեցին Խորհրդային Միության ամբողջ բազմազանության ու ձևերով հարուստ իրականության մեջ: Ընդսմին նրանք իրականացան 170 միլիոն բնակչություն ունեցող մի յերկրում, վորն աչքի յե ընկնում իր զարգացման պատմական վորոշ յուրահատկությամբ, կուլտուրական, քա-

ղաքական ու տնտեսական վորոշ առանձնահատկություններով:

Այդպիսով խոսքը սոցիալիզմի սոսկ թեորետիկ յուրացմանը չի վերաբերում: Սոցիալիզմի թեորիան մենք պետք է ուսումնասիրենք մեր սոցիալիստական իրականության կենդանի հյուսվածքում, միլիոնավոր աշխատավորների ստեղծագործության մեջ, ԽՍՀՄ-ի նյութական հիմքում, տնտեսական կառուցվածքում, մեր յերկրի հասարակական ու քաղաքական հարաբերություններում:

Մեր ագիտատորներն ու պրոպագանդիստները կկարողանան Նոր Սահմանադրությունը ճիշտ բոլշևիկորեն բացատրել միմիայն այն դեպքում, յերբ նրանք կդիմեն մարքսիզմ-լենինիզմի գանձարանին, Լենինի և Ստալինի ստեղծագործություններին և մեր սոցիալիստական իրականությանը:

Այժմ առանձնապես անհանդուրժելի յե վորևէ մակերեսայնություն, թեթևություն՝ լուրջ ու հիմնական բացատրության փոխարեն: Այժմ պրոպագանդիստներից ու ագիտատորներից հրամայաբար պահանջվում է, վոր նրանք հիմնավորապես նա-



խապատրաստվեն բացատրական աշխատանքի, իրենք խնամքով մտածեն այն հարցերի մասին, վորոնք հուզում են աշխատավորներին:

Հենց այն պատճառով, վոր մի քանի պրոպագանդիստներ մոռացության են տալիս մարքսիզմի հիմնական գիծը՝ թեորիայի ու պրակտիկայի անխզելի կապը, սոցիալիստական իրականության կոնկրետ ուսումնասիրությանը արհամարհանքի հետեվանքով սոցիալիստական հասարակարգին վերաբերող նրանց դատողությունները վեր են ածվում սխոլաստիկ, անպտուղ իմաստակությունների, հակասությունների ձևական խաղի: Այդպիսի իմաստունները, վորոնք հետեվում են Խեմնիցերի «Մետաֆիզիկ» առակի իրենց յեղբայրակցին, հենց այդ պատվարժան մետաֆիզիկի նման, ընկնում են փոսը, վորտեղից այլևս իրենք չեն կարողանում դուրս գալ:

Դեպի սոցիալիզմը մեր կատարած իրական պատմական զարգացումն ուսումնասիրելու փոխարեն, զբաղվելով գրքերից սերտած ֆորմուլների համադրմամբ, նրանք անխուսափելիորեն փակուղու մեջ են ընկնում՝ «ինչպես է, վոր մեզ մոտ սոցիալիս-

տական հասարակություն է, և միևնույն ժամանակ մենք խոսում ենք բանվորների ու գյուղացիների մասին»: «Իսկ ինչպե՞ս համատեղել սոցիալիզմը և բանվոր դասակարգի դիկտատուրան»: «Մեզ մոտ սոցիալիզմ է կառուցված և միևնույն ժամանակ մենք ասում ենք, թե ապրում ենք ՆԵՊ-ի վախճանը»:

Մարքսիզմ-լենինիզմի հիմնադիրները սուր խարազանում ու ծաղրում եյին այդպիսի սխոլաստներին ու մետաֆիզիկներին: Այն հարցերը, վորոնց դեմ են առնում մեր մետաֆիզիկները, լուծվում են, կարող են հասկանալի դառնալ ու բացատրվել միմիայն սոցիալիստական վերափոխումների ընթացքը մեր յերկրում և սոցիալիզմի մեր հասած աստիճանի յուրատեսակությունը քննարկելով:

***

Սոցիալիստական վերափոխումների այդ ընթացքը հսկայական յերկրի սահմաններում, վոր ունի բարդ ու բազմատեսակ տնտեսական կառուցվածք (վերհիշեցեք այն հինգ կացութաձևերը, վորոնք բնորոշել եր Լենինը 1918 թվականին և ապա 1921 թվականին), բնավ համաչափ, հարթ,



ներդաշնակ չէր յեղել: Մի՞թե կարելի յե ընդհմին մոռանալ և այն կատաղի դասակարգային պայքարը, վորի մեջ ծնվում, աճում ու ամրապնդվում է սոցիալիստական իրավակարգը:

Հեղափոխության նախօրյակին մեր յերկրում յեղել է խոշոր կապիտալիստական ինդուստրիա՝ կատարելապես հասունացած սոցիալիզմի համար, և մի ովկիան մանր, բաժան-բաժան գյուղացիական տնտեսությունների, վորոնք սոցիալիզմին կարող եյին հասնել անցման միայն մի շարք աստիճաններով:

Մեր սոցիալիստական հասարակարգը չէր կարող այժմ ևս չկրել (բայց չէ՞ վոր սոցիալիստական մեծ հեղափոխության սկզբից անցել է ընդամենը մոտ 20 տարի) վերին աստիճանի տարբեր տնտեսական կացութաձևերից սոցիալիզմին անցնելու այդ բազմապիսության ու անհամաչափության հետքերն ու նշանները:

Մեր հարստության տնտեսական հիմքն է կազմում «տնտեսության սոցիալիստական սիստեմը և արտադրության գործիքների ու միջոցների սոցիալիստական սեփականատիրությունը, վորոնք հաստատվել են տնտե

ության կապիտալիստական սիստեմի լիկվիդացիայի, արտադրության գործիքների ու միջոցների մասնավոր սեփականության վերացման և մարդու կողմից մարդու շահագործումը վոչնչացնելու հետևանքով»: (ԽՍՀՄ-ի Սահմանադրության 4-րդ հոդվածը):

Սակայն դրանից անմիջապես հետո 5-րդ հոդվածն ասում է՝ «Սոցիալիստական սեփականությունը ԽՍՀՄ-ում ունի կամ պետական սեփականության ձև (համաժողովրդական ունեցվածք), կամ կոոպերատիվ-կոլտնտեսային սեփականության ձև (առանձին կոլտնտեսությունների սեփականություն, կոոպերատիվ միավորումների սեփականություն)»:

Սոցիալիստական սեփականության այդ ձևերն ապա «օրինաստեղծարարության» պտուղ չեն, նրանք յերկնքից չեն ընկել: Սահմանադրության մեջ արձանագրված է միայն այն, ինչ վոր գոյություն ունի իրականության մեջ և վոր նույնիսկ կոմունիզմի առաջին փուլում արտահայտում է սոցիալիզմին անցնելու անհամաչափությունն ու առանձնահատկությունները տնտեսական այնպիսի տարբեր կացութա-



ձևերից, ինչպիսիք են կապիտալիզմն ու մանր ապրանքային տնտեսությունը:

Պետական համաժողովրդական սեփականությունն իր սկիզբն է առնում սոցիալիստական մեծ հեղափոխության առաջին օրերից, յերբ պրոլետարիատի դիկտատուրան կապիտալիստներից ու կալվածատերերից բռնագրավեց հողը, գործարանները, ֆաբրիկները, յերկաթուղիներն ու բանկերը և դարձրեց դրանք ամբողջ ժողովրդի սեփականություն: Այդ համաժողովրդական սեփականությունը բազմապատկվեց ու հարստացավ սոցիալիստական շինարարության ընթացքում, նոր ինդուստրիայի, խորհտնտեսությունների, ՄՏԿ-ների ստեղծմամբ և այլն: Այդ պետական սեփականությունը՝ համաժողովրդական ունեցվածքը՝ հանդիսանում է առաջատար հիմքը մեր էկոնոմիկայում:

Կոոպերատիվ-կոլտնտեսային սեփականության ձևը սկսեց լայն չափով կազմավորվել զգալիորեն ավելի ուշ, յերբ աշխատավոր գյուղացիությունը համոզվեց խոշոր սոցիալիստական հողագործության առավելությունների մեջ և վոտքը դրեց կամավոր կերպով կոլտնտեսությունների մեջ

միանալու ուղին: Սոցիալիստական սեփա-
կանության այդ ձևի հիմնական գծերը
գրված են գյուղատնտեսական արտելի օրի-
նակելի կանոնադրության մեջ: Սեփակա-
նության այդ ձևն արտացոլում է մանր
ապրանքային տնտեսությունից սոցիալիզմին
անցնելու առանձնահատկությունը: Իսկ
նրա ծավալն ու այն հանգամանքը, որ
սեփականության այդ ձևն իշխում էր
գյուղատնտեսության մեջ, արտացոլում են
մեր յերկրի պատմական հատուկ պայման-
ները, մի յերկրի, վորտեղ պրոլետարական
սոցիալիստական հեղափոխության սկզբին
եկոնոմիկայում գերիշխում եր գյուղացիա-
կան մանր ապրանքային տնտեսությունը:
Այն փաստը, վոր սոցիալիստական սե-
փականության այդ յերկու ձևերն ել ար-
ձանագրված են ԽՍՀՄ-ի հիմնական օրեն-
քում, չեշտում է նրանց նշանակությունը,
նրանց համատեսակությունը և նրանց տար-
բերությունները:
Ցեվ, արդարեվ, միմիայն յելնելով սո-
ցիալիստական սեփականության այդ յեր-
կու ձևերի առանձնահատկություններից,
կարելի յե հասկանալ նաև այն տարբերու-
թյունները, վորոնք գոյություն ունեն պե-



տական հեղափոխական սոցիալիստական
տիպի ձեռնարկությունների և կոլտնտեսա-
յին սոցիալիստական ձեռնարկությունների
միջեվ, ինչպես և հասկանալ պետական սո-
ցիալիստական ձեռնարկության մեջ բան-
վորի ունեցած դրության և կոլտնտեսային
արտադրության մեջ գյուղացու ունեցած
դրության տարբերությունները:
Իսկ վոր գլխավորն է, մեր հասարակու-
թյան կառուցվածքի տեսակետից, սոցիա-
լիստական սեփականության յերկու ձևերի
այդ առանձնահատկությունները հնարավո-
րություն են տալիս հասկանալու այն ստ-
տիճանը, վորին հասել ենք դասակարգերի
վերացման ուղղությամբ:
Շահագործող դասակարգերն արդեն վե-
րացված են: Արմատահան է արված նաև
շահագործումը: Բանվորներն ու գյուղացի-
ները միացած են տնտեսության սոցիալիս-
տական սիստեմով: Թե ինչպե՞ս են փոխ-
վել այդ դասակարգերը հիանալի կերպով
ասաց ընկեր Ստալինը: Այդ յերկու դասա-
կարգերի միջեվ,— ասաց ընկեր Ստալի-
նը,— սահմանները ջնջվում են, վերանում
են, իսկ դասակարգային հին բացառիկու-
թյունն անհետանում է: Սակայն դեռ կան

դասակարգային տարբերությունների մնացորդներ և այդ դասակարգային տարբերությունները չի կարելի հասկանալ, առանց քննելու սոցիալիստական սեփականության և սոցիալիստական ձեռնարկությունների յերկու ձևերի կոնկրետ առանձնահատկությունները:

Բանվոր դասակարգը վոչ միայն ներկայացնում է մեր եկոնոմիկայի սոսկ «առաջատար հիմքը»՝ խոշոր սոցիալիստական ինդուստրիան, յերկաթուղիները, ՄՏԿ-ները, խորհտնտեսությունները: Նա իր քաղաքական մակարդակով, կազմակերպվածությամբ, գիտակցությամբ, պայքարի փորձով, ներկայումս ել հանդիսանում է աշխատավորների ավանգարդը, նրանց ղեկավարը: Սահմանադրությունն ամրացնում է բանվոր դասակարգի և մեր կուսակցության այդ ղեկավար դերը:

«Ի տարբերություն բուրժուական սահմանադրություններից,— ասում է ընկեր Ստալինը,— ԽՍՀՄ-ի նոր Սահմանադրության նախագիծը յելնում է այն բանից, վոր հասարակության մեջ այլևս հակամարտ դասակարգեր չկան, վոր հասարակությունը բաղկացած է յերկու միմյանց



բարեկամ դասակարգերից՝ բանվորներից և գյուղացիներից, վոր իշխանության գլուխն են կանգնած հենց այդ աշխատավորական դասակարգերը, վոր հասարակության պետական ղեկավարությունը (դիկտատուրան) պատկանում է բանվոր դասակարգին՝ վորպես հասարակության առաջավոր դասակարգի, վոր Սահմանադրությունը հարկավոր է նրա համար, վորպեսզի ամրապնդենք աշխատավորությանը ցանկալի և ձեռնտու հասարակական կարգերը»:

Պետական իշխանության հարցը, բանվոր դասակարգի և նրա կուսակցության ղեկավար դերի հարցը, հիմնական, վճռական հարց է: Նա միշտ վճռական է յեղել և այդպիսին ել կմնա:

Վոչ մի րոպե չի կարելի մոռանալ և աչքաթող անել նաև այն, վոր սոցիալիզմը հաղթել է առայժմ մի յերկրում և վոր մենք ապրում ու սոցիալիզմ ենք կառուցում կապիտալիստական շրջապատում:

Ֆաշիզմը ԽՍՀՄ-ի դեմ վոչ միայն պատերազմ է սպառնում: Ֆաշիստական ըշտաբները մեզ մոտ անընդհատ ուղարկում են լրտեսներ, դիվերսանտներ, տեռորիստներ: Նրանք ոգնում են տրոցկիստական-

զինովյեվական վոհմակին ու աջ հերձվածողներին պատկանող մոլի սրիկաներին ու բանդիտներին՝ համախմբվելու։ Իսկ այդ դավաճաններն ու վիժվածքները, դեպի սոցիալիզմի գործը, խորհրդային իշխանությունը և ԽՍՀՄ-ի աշխատավորներն իրենց տածած ատելությամբ, իրենց հերթին միաձուլվել ու միահյուսվել են ֆաշիստ պահնորդական բաժինների հետ, այնպես վոր ներկայումս ֆաշիստ լրտեսին ու դիվերսանտին չես տարբերի տրոցկիստ– զինովյեվականից կամ աջ հերձվածողներին պատկանող բանդիտից։

Մեր պետության ամրապնդումը, զգաստությունն ու անողոքությունը թշնամիների հանդեպ— հանդիսանում է մեր հետագա առաջընթացի անհրաժեշտ պայմանը դեպի կոմունիզմ։

***

«Հնի մնացուկները նորի մեջ ցույց է տալիս մեզ կյանքը, յուրաքանչյուր քայլափոխում՝ և՛ բնության մեջ, և՛ հասարակության մեջ»— ասում է Լենինը։

Մեր նոր սոցիալիստական հասարակության մեջ մենք դեռ տեսնում ենք հնի մնացուկները։ Բնական է, յեթե հիշեց-



նենք ԽՍՀՄ-ի Սահմանադրության 9-րդ հոդվածը՝ «Տնտեսության սոցիալիստական սիստեմի կողքին, վորը հանդիսանում է տնտեսության տիրապետող ձևը ԽՍՀՄ-ում, որենքով թույլատրվում է մենատնտես գյուղացիների ու տնայնագործների մանր մասնավոր տնտեսությունը, վորը հիմնված է անձնական աշխատանքի վրա և բացառում է ուրիշի աշխատանքի շահագործումը»։

Սահմանադրության այդ հոդվածն ասում է, վոր մեր յերկրում սոցիալիստական վերափոխման պրոցեսը դեռ մինչև վերջը չի հասցված։ Տնտեսագիտական տեսակետից այդ մանր տնտեսությունը չնչին մեծություն է ներկայացնում, սակայն նրա հետ կապված են միլիոնավոր մարդիկ— մանր գյուղացիական տնտեսություններ ու տնայնագործներ— և մենք վոչ մի կերպ չենք կարող զանց առնել, անուշադիր թողնել այդ փաստը։

Հենց դրանում էլ կայանում է վորոշ յուրատեսակությունը։ Մանր ապրանքային տնտեսությունը, վորը բնավ անցման շրջանի մնացորդը չէ միայն, և նույնիսկ

իսկապես կապիտալիզմի մնացորդը չէ, այլ ներկայացնում է նախակապիտալիստական եպոխայի մնացուկը,— վորոշ չափով ապրել է մինչև կոմունիզմի առաջին փուլը և իր տեղն է գտել առաջին սոցիալիստական պետության Սահմանադրության մեջ:

Սակայն միմիայն անհուսալի Մանիլովները կարող են պատմական զարգացումը պատկերացնել իրենց այնպես, թե յուրաքանչյուր աստիճան ու փուլ կերտվում ու վերջանում են այսպես կոչված «մաքրված» և նոր փուլը հրապարակ է գալիս ավարտված, իր բոլոր մասերով կերտված, հղկված ձևով: Այն ինչ, իրականում անցյալի պոչերը, մնացուկները դեռ կան մեզանում:

Պետք է նաև նկատի ունենալ հետևյալը՝ քանի վոր գոյություն ունի մանր ապրանքային տնտեսություն և դեռ պահպանվել են կապիտալիզմի տրադիցիաների կենդանի կրողները, հնարավոր է սպեկուլյանտների, կապիտալիստական առանձին մակաբույծների յերևան գալը: Մեր որենքները բացառում են այդ կատեգորիան: Սակայն վատ է այն կոմունիստը, վորը



հույսը դնում է միայն որենքի վրա և մոռանում է հնի մնացորդներն ու թափթփուկները, վորոնցից կարող են դեռ ծլել-աճել մանր պարազիտներ և այն անկատարելիությունները, ճեղքերը, վորոնց միջով կարող են սողոսկել նրանք՝ աշխատավորներին վնաս հասցնելու համար:

Ահա թե ինչու մենք, արձանագրելով տնտեսության սոցիալիստական սիստեմի լիակատար հաղթանակը, մի սիստեմ, վորը հանդիսանում է մեր ամբողջ կյանքի և հասարակարգի հիմքը, չենք կարող ասել, վոր անցման շրջանին, ՆԵՊ-ին վերջ է դրված, վոր նրանց վրա կարելի յե խաչ քաշել: Իհարկե, հիմնական պրոբլեմի՝ «Ո՞վ–ում» հարցի լուծման տեսակետից, անցման շրջանի գլխավորն ու հիմնականն արդեն անցած աստիճան է, իսկ ՆԵՊ-ը, յեթե խոսելու լինենք նրա հիմնական անելիքի մասին, սպառել է իրեն: Սակայն հնի պոչերն ու մնացորդները դեռևս կան: Ուստի այն, ինչ վոր ասել էր ընկեր Ստալինը Խորհուրդների Համագումարում— «Մենք ունենք այժմ ՆԵՊ-ի վերջին շրջանը, ՆԵՊ-ի վախճանը»,— ճիշտ է վորոշում դրությունը:

Այստեղ վոչ մի կերպ չի կարելի հասարակ դարձնել այդ բոլոր հարցերը, աչքաթող անել կատուցիկ խաղալ վերացական սխեմներով: ՆԷՊ-ի հարցի կապակցությամբ արժե հիշեցնել վոչ անկարեվոր մի բան՝ Նոր տնտեսական քաղաքականության ընթացքում մշակվեցին, իրենց զարգացումն ստացան մեր սոցիալիստական տնտեսության այնպիսի մեթոդներ, ինչպիսիք են խորհրդային փողային սիստեմը և ռուբլին, խորհրդային առևտուրը, տնտհաշվարկը: Տնտեսական քաղաքականության այդ մեթոդները ներկայումս բնավ չեն մահանում: Ընդհակառակն մենք ամրացնում ենք դրանք: Դրանցից է կախված սոցիալիստական շինարարության հաջող ընթացքը և դրանք պահպանում են իրենց լիակատար ուժը նաև առաջիկա ժամանակաշրջանի համար:

***

Այդ բոլորից հետևվում է, վոր նոր Սահմանադրության բացատրմանը և յուրացմանը չի կարելի մոտենալ վորպես հերթական կամպանիայի: Սահմանադրության յուրացումը կբարձրացնի սոցիալիզմի մի-



լիոնավոր մարտիկների՝ ԽՍՀՄ-ի քաղաքացիների քաղաքական մակարդակը:

Սահմանադրության բացատրությունը կազմակերպելու գործում հիմնականն է՝ առանձնացնել լավագույն մարդիկ՝ բանվորների և կոլտնտեսականների խմբակների ղեկավարելու համար, Սահմանադրությունը կարդալու և բացատրելու համար: Այնպիսի փաստեր, ինչպիսիք յեղան Իվանովոյի մարզի Նավոլոկյան շրջանում, վորտեղ խմբակների ղեկավարները խորթ ու թշնամի մարդիկ դուրս յեկան, խայտառակություն է կուսակցական կազմակերպության համար: Նրանք վկայում են, վոր Համ.Կ.(բ)Կ-ի Իվանովոյի մարզկոմն արհամարհական վերաբերմունք է ցուցաբերում քաղաքական— դաստիարակչական աշխատանքին և չի հասկանում նրա նշանակությունը:

Վորոնեժից ստացված հաղորդագրությունները նույնպես ցույց են տալիս, վոր Համ. Կ.(բ)Կ-ի մարզկոմը պատշաճ ուշադրություն չի նվիրում Սահմանադրության կապակցությամբ քաղաքական աշխատանք կազմակերպելու գործին: Վորոնեժի կարեվորագույն «ՍԿ—2» գործարանում, բան-

վորները միայն դեկտեմբերի 21-ին կարողացան հաշվետվություն լսել Խորհուրդների Համագումարի աշխատանքի մասին, այն էլ վոչ իրենց պատվիրակի բերանից։

Սահմանադրության կապակցությամբ կատարվող քաղաքական աշխատանքը կարճատեվ, հեշտ գործ չէ։ Պրոպագանդիստները և ագիտատորները, կուսակցական աշխատողներն իրենք պետք է ուշի ուշով ուսումնասիրեն Սահմանադրությունը և ընկեր Ստալինի զեկուցումը, խորասուզվեն և թափանցեն մեր յերկրի հասարակական ու պետական կառուցվածքի խոշոր հարցերի մեջ։ Այլ կերպ նրանք չեն կարողանա ճիշտ կատարել բացատրական աշխատանքը։

Յեվ վերջինը։ Սահմանադրության և ընկեր Ստալինի զեկուցման բացատրումը պետք է տեղի ունենա այդ կարեվորագույն փաստաթղթերի տեքստի հիման վրա։ Դրա մասին հարկ է լինում խոսելու, վորովհետեվ կան դեպքեր, յերբ մարդիկ Սահմանադրությամբ, հասարակական ու պետական կառուցվածքի հարցերով զբաղվելու փոխարեն, սկսում են խմաստակու-



թյուններ անել։ Իսկ յերբեմն կուսակցական ղեկավար կազմակերպություններն ևս մղում են դեպի այդ ճանապարհը։ Որինակ՝ Համ. Կ.(բ)Կ-ի Մոսկվա քաղաքի Յերկաթուղային ռայկոմը Սահմանադրության վերաբերյալ զրույցների համար ուղարկել է 19 թեմա, վորոնց միայն մի մասը անմիջական կապ ունի Սահմանադրության հետ։ Նման ցուցումներ շեղում են քաղաքական աշխատանքի իսկական խնդիրներից։

Իսկ ամբողջ քաղաքական աշխատանքի հիմքն են կազմում այժմ եպոխայի յերկու մեծագույն փաստաթղթեր՝ նոր Սահմանադրությունը և ընկեր Ստալինի զեկուցումը։ Այդ յերկու պատմական փաստաթղթերն անբաժան են։

# ՍՈՑԻԱԼԻԶՄԻ ՅԵՐԿՐԻ ԸՆՏՐԱԿԱՆ ՍԻՍՏԵՄԸ

## Ի՞ՆՉՆ Է ԿՈՉՎՈՒՄ ԸՆԴՀԱՆՈՒՐ, ՈՒՂՂԱԿԻ, ՀԱՎԱՍԱՐ ԸՆՏՐԱԿԱՆ ԻՐԱՎՈՒՆՔ ԳԱՂՏՆԻ ՔՎԵԱՐԿՈՒԹՅԱՄԲ

Ստալինյան նոր Սահմանադրությունը մեզ մոտ՝ ԽՍՀՄ-ում, մտցրեց ընդհանուր, ուղղակի և հավասար ընտրություններ գաղտնի քվեարկությամբ:

Սահմանադրության 134-րդ հոդվածում հետևյալ կերպ է վորոշվում խորհրդային իշխանության բոլոր որգանների ընտրության նոր կարգը՝

«Աշխատավորների պատգամավորների բոլոր Խորհուրդների, ԽՍՀՄ-ի Գերագույն Խորհրդի, Միութենական հանրապետությունների Գերագույն Խորհուրդների, աշխատավորների պատգամավորների յերկրամասային ու մարզային Խորհուրդների, ավտոնոմ հանրապետությունների Գերագույն Խորհուրդների,



ավտոնոմ մարզերի աշխատավորների պատգամավորների Խորհուրդների, աշխատավորների պատգամավորների ոկրուգային, շրջանային, քաղաքային ու գյուղական (ստանիցայի, գյուղակի, խուտորի, ղշլաղի, աուլի) Խորհուրդների պատգամավորների ընտրությունները կատարում են ընտրողներն ընդհանուր, հավասար և ուղղակի ընտրական իրավունքի հիման վրա, գաղտնի քվեարկությամբ»: Ի՞նչն է կոչվում ուրեմն ընդհանուր, ուղղակի, հավասար ընտրական իրավունք գաղտնի քվեարկությամբ:

Ընդհանուր ընտրական իրավունք է կոչվում՝ բառիս ուղղակի իմաստով, այն կարգը, յերբ ընտրական իրավունքները տարածվում են յերկրում վորոշ տարիքի հասած ամբողջ հասակավոր բնակչության վրա:

Մեր նախկին ընտրական սիստեմը ընտրական իրավունքներից բացեիբաց զրկում էր բնակչության բոլոր շահագործող խավերին՝ այն անձանց, վորոնք շահագործում են ուրիշի աշխատանքը շահույթ ստանալու համար, վորոնք ապրում են վոչ

աշխատավորական յեկամուտով, ցարական ռեժիմի ծառայողներին, կրոնական պաշտամունքի սպասավորներին և այլն: Այն պատճառով, վոր մեր ընտրական օրենքներն ընտրությանը մասնակցելուց բացեիբաց հետ եյին պահում վորոշ խմբակներ, մենք մեր նախկին ընտրական իրավունքը ընդհանուր չեյինք անվանում:

Ընդհակառակն, մի շարք բուրժուական յերկրներում, ընտրական իրավունքը կոչվում է ընդհանուր, թեյեվ իրոք այդ յերկրներում ընտրական իրավունքներ չունեցող անձանց թիվը միշտ անչափ ավելի յե, քան մեզ մոտ: Դրա մասին մանրամասնորեն կխոսենք ստորեվ:

Ուղղակի ընտրություն է կոչվում այն կարգը, յերբ ընտրողներն անմիջականորեն պատգամավորներ են ընտրում իշխանության ներկայացուցչական օրգանների համար: Օրինակ՝ քաղաքային և գյուղական խորհուրդների ընտրությունները մեզ մոտ միշտ ուղղակի յե յեղել:

Բացի ուղղակի ընտրություններից, կարող են գոյություն ունենալ նաև վոչ ուղղակի, կամ այլ խոսքով՝ բազմաստիճան



ընտրություններ: Բազմաստիճան ընտրությունների ժամանակ, ընտրողները պատգամավորներ են ընտրում վոչ անմիջականորեն: Բազմաստիճան ընտրությունների ձևերը կարող են տարբեր լինել: Մի քանի յերկրներում, վոչ ուղղակի ընտրությունների պայմաններում, ընտրողները վոչ թե ուղղակի պատգամավորներ են ընտրում, այլ ընտրողներ, իսկ այդ ընտրողներն արդեն իրենց միջից պատգամավորներ են ընտրում:

Մեզ մոտ ԽՍՀՄ-ում, վոչ ուղղակի, այլ բազմաստիճան ընտրությունների միջոցով, ընտրվում եյին խորհուրդների շրջանային, մարզային ու յերկրային, հանրապետական ու համամիութենական համագումարները: Օրինակ՝ խորհուրդների շրջանային համագումարի պատվիրակներին ընտրում եյին քաղաքային և գյուղական պլենումները (և վոչ անմիջականորեն ընտրողները): Խորհուրդների յերկրային (մարզային) համագումարի պատվիրակներն ընտրվում եյին խորհուրդների շրջանային համագումարներում և յերկրային (մարզային) օրգաններին յենթակա քաղաքային խոր-

հուրդների պլենումներում և այլն:

Հավասար ընտրություններ են կոչվում այն ընտրությունները, վորտեղ բնակչության վոչ մի խումբ ընտրական առավելություններ չունի՝ համեմատած մյուս խմբերի հետ: Բուրժուական յերկրներում քվեարկության հավասարության սկզբունքը հաճախ խախտվում է նրանով, վոր մի քանի ընտրողներ ունենում են վոչ թե մի, այլ մի քանի ընտրական ձայն: Այդպիսի առավելություններ է վայելում հիշյալ յերկրներում բացառապես բուրժուազիան: Որինակ՝ Անգլիայում ընտրողը կարող է ընտրական յերկու ձայն ունենալ այն դեպքում, յերբ նա ապրում է մի վայրում, իսկ նրա արդյունաբերական կամ առևտրական ձեռնարկությունը գտնվում է մի այլ վայրում: Քվեարկության հավասարության սկզբունքները խախտվում են նաև այն դեպքում, յերբ ընտրական միավորները (օկրուգները), հավասար թվով բնակչություն չունենալով, ընտրում են հավասար թվով պատգամավորներ: Այդ դեպքում մի օկրուգում մի պատգամավոր կընկնի ավելի մեծ թվով ընտրողներին,



իսկ մի այլ օկրուգում՝ ավելի քիչ թվով ընտրողներին:

Վերջապես, գաղտնի կամ փակ քվեարկությունը նշանակում է, վոր քվեարկումը կատարվում է վոչ թե «թեր» կամ «դեմ» ձեռք բարձրացնելով, այլ ընտրական տուփի մեջ փակ ծրարով կամ այլ յեղանակներով բյուլլետեն, այսինքն թեկնածուների ազգանունները կրող ընտրական տոմս գցելով:

## ԲՈՒՐԺՈՒԱԿԱՆ ԸՆՏՐԱԿԱՆ ԻՐԱՎՈՒՆՔԸ

Խորհրդային ընտրական սիստեմը հենց սկզբից վոչնչացրեց այն բազմաթիվ պայմանները, վորոնք բուրժուական յերկրներում սահմանափակում են աշխատավորների ընտրական իրավունքները: Բուրժուական սահմանադրությունները սահմանում են մի շարք պահանջներ, վորոնց պետք է բավարարի քաղաքացին, վորպեսզի նրան թույլատրվի մասնակցել ընտրություններին: Այդ պահանջները կամ պայմանները կոչվում են ցենզ:

Բուրժուական յերկրներում յերկար ժա-

մանակ գոյություն ուներ, իսկ մի քանի երկրներում նաև ներկայումս գոյություն ունի գույքային ցենզ: Գույքային ցենզ է կոչվում օրենքում սահմանված այն պահանջը, որ ընտրողն ունենա կամ անշարժ գույք, կամ բարձր վարձագնով բնակարան, կամ վճարի որոշ գումարից ոչ ցածր պետական հարկ:

Բուրժուազիան, գույքային ցենզի միջոցով, ընտրական իրավունքներից զրկում է բնակչության ամբողջ չունևոր կամ սակավ ունևոր մասը:

19-րդ դարի երկրորդ կեսից, պրոլետարիատի և նրա հետևից գնացող աշխատավորության ոչ պրոլետարական այլ խավերի ճնշմամբ, գույքային ցենզը մի շարք բուրժուական երկրներում սկսում է վերացվել:

Սակայն հարկադրված լինելով համաձայնվելու վերացնել գույքային այն ցենզը, որը բացահայտ դասակարգային բնույթ է կրում և բացեիբաց ուղղված է աշխատավորության դեմ, բուրժուազիան պահպանում է սքողված գույքային բնույթ կրող մի շարք այլ ցենզեր ու սահմանափակումներ:



Այդպիսի սահմանափակում է հանդիսանում նստակեցության ցենզը: Նստակեցության ցենզն ընտրական իրավունքներից զրկում է նրանց, ովքեր ընտրական օկրուգում որոշ ժամանակ չեն ապրել: Ֆրանսիայում և Անգլիայում պահանջվում է, որ ընտրողն ընտրական օկրուգում ապրած լինի առնվազն վեց ամիս: ԱՄՆ-ում ամենից ավելի տարածված է մի տարվա ցենզը, իսկ առանձին նահանգներում նույնիսկ երկու տարվա ցենզը:

Նստակեցության ցենզը ընտրություններին մասնակցելուց հետ է պահում սեզոնային բանվորներին, որոնք հաճախ չեն կարող ապրել մի օկրուգում այնքան ժամանակ, որքան պահանջում է նստակեցության ցենզը: Որպես կանոն, նստակեցության ցենզ գոյություն ունենալու դեպքում, իրենց ընտրական իրավունքը չեն կարող օգտագործել նաև գործազուրկները, որոնք աշխատանք փնտրելով, հաճախ են փոխում իրենց բնակատեղին:

Ապա մի շարք երկրներում գոյություն ունի այսպես կոչված գրագիտության ցենզ: Այդ ցենզով, ընտրողից պա-

հանձնվում է կամ լիակատար գրագիտություն «պետական լեզվով» (այսինքն կարողանալ նրանով կարդալ ու գրել), կամ մասնակի գրագիտություն (այսինքն կարողանալ միայն կարդալ): Այդ ցենզի հիման վրա ընտրական իրավունքներից զրկվում են շատ աշխատավորներ, մանավանդ գյուղացիները: Այդ ցենզն ամենից ավելի ծանր կերպով է դրսևորվում բազմազգ երկրներում: Բուրժուական երկրներում «պետական լեզու» է հայտարարվում միշտ տիրապետող ազգության լեզուն: Այդպիսի բազմազգ բուրժուական պետություններում ապրող մյուս ազգությունների աշխատավորները հաճախ չգիտեն գրել ու կարդալ «պետական լեզվով»:

**Ե՛վ նստակեցության ցենզը, և՛ գրագիտության ցենզը իրենց ամբողջ ծանրությամբ ընկնում են շահագործվող դասակարգերի վրա:** Բուրժուազիան միշտ ունենում է և՛ նստակեցության ցենզ, և՛ գրագիտության ցենզ, իսկ անհրաժեշտ դեպքում հեշտությամբ կարող է զանց առնել ամեն տեսակ սահմանափակումները: Օրինակ՝ Հյուսիսային Ամերիկայի մի



շարք նահանգներում, որտեղ պահպանվում է գրագիտության ցենզը, թույլ է տրվում անգրագիտությունը փոխարինել որոշ գույքի տիրապետմամբ: Այլ խոսքով՝ եթե դու անգրագետ ես, բայց հարուստ, կարող ես ընտրող լինել, իսկ եթե աղքատ ես, չես կարող:

Գաղտնի քվեարկությամբ ընդհանուր, ուղղակի ու հավասար ընտրական իրավունքի պահանջը ամենադեմոկրատիկ պահանջներից մեկն է, որ առաջադրում են աշխատավորները կապիտալիստական երկրներում: Սակայն այդ պահանջը երբեք ինչպես հարկն է չի կենսագործում բուրժուազիան, նույնիսկ «ամենադեմոկրատիկ» բուրժուական պետություններում:

Մի շարք երկրներում՝ Ֆրանսիայում, Բելգիայում, Իտալիայում, Շվեյցարիայում, Հարավ-Սլավիայում, Հունաստանում, Ճապոնիայում, Արգենտինայում կանայք ընտրական իրավունքներ չունեն: Բուրժուական երկրներում գոյություն ունեն ընտրական իրավունքների սահմանափակումներ ըստ ազգային-ռասսայական նշանի:

ԱՄՆ-ի հարավային հինգ նահանգներում, 2,2 միլիոն նեգրերից, փաստորեն 19 հազար հոգու չի թույլատրվում մասնակցել ընտրություններին: Հարավ-Աֆրիկյան միության մեջ, վորը մտնում է Մեծ Բրիտանիայի կազմի մեջ, ընտրական իրավունք ունեն 2,5 միլիոն սպիտակներ, իսկ 5,5 միլիոն նեգրերը զուրկ են ձայնի իրավունքից:

Հնդկական պառլամենտի ընտրությունների համար (Հնդկաստանը անգլիական գաղութ է) անգլիական բուրժուազիան հորինել է մի օրենք, վորով հնդկական բնիկ բնակչության 86 տոկոսը (գլխավորապես գյուղացիները) զուրկ է ընտրական իրավունքից:

Անգլիայում, Ֆրանսիայում, Բելգիայում, ԱՄՆ-ում քաղաքացին ընտրելու իրավունք է ստանում միմիայն 21 տարեկան հասակից, իսկ ընտրվելու իրավունք՝ միայն 25 տարեկան հասակից (բացառությամբ Անգլիայի, վորտեղ ընտրվելու իրավունք են ստանում 21 տարեկանից): Հոլանդիայում, Դանիայում ընտրել կարող են միմիայն 25 տարեկան լինելուց հետո:



Հոլանդիայում և Հունգարիայում ընտրվելու իրավունք են վայելում միայն 30 տարեկան հասակից:

Այդպիսով, «ընդհանուր» ընտրական իրավունք ունեցող պետությունների մեծ մասում, ընտրություններից զրկվում է բնակչության ամենաակտիվ մասը՝ 18-ից մինչև 24 տարեկան յերիտասարդությունը:

Բանակին, այսինքն զինված բանվորներին ու գյուղացիներին, բուրժուական յերկրներում, բացառությամբ Անգլիայի, վորտեղ բանակը մեծ չէ, նույնպես չի թույլատրվում մասնակցել ընտրություններին:

Ֆաշիզմը վոչնչացնում է նաև աշխատավորների ընտրական իրավունքների այն մնացորդները, վորոնք գոյություն ունեն բուրժուական դեմոկրատիայի յերկրներում:

Իտալիայում և Գերմանիայում ներկայացուցչական որգանները ընդհանրապես վերացված են: Մյուս ֆաշիստական և ֆաշիզացող յերկրներում այնքան մեծացված են սահմանափակիչ բոլոր պահանջները, վոր բանվորներն ու գյուղացիները

փաստորեն զրկվում են ընտրական իրավունքներից:

Այս փաստերն ակնառու կերպով լուսաբանում են այն հայտարարությունը, վորն արել էր ընկ. Ստալինը Խորհուրդների Համամիութենական արտակարգ 8-րդ Համագումարում իր տված զեկուցման մեջ, այն է՝

«Դեմոկրատիզմի տեսակետից բուրժուական սահմանադրությունները կարելի յե յերկու խմբի բաժանել՝ սահմանադրությունների մի խումբն ուղղակի ժխտում է կամ փաստորեն վոչնչի յե վերածում քաղաքացիների իրավունքների հավասարությունը և դեմոկրատական ազատությունները: Սահմանադրությունների մյուս խումբը սիրով ընդունում է և մինչև անգամ ցուցադրում է դեմոկրատական սկզբունքները, բայց միաժամանակ այնպիսի վերապահումներ ու սահմանափակումներ է անում, վոր դեմոկրատական իրավունքներն ու ազատությունները բոլորովին խեղաթյուրված են դուրս գալիս: Նրանք խոսում են հավասար ընտրական իրավունքների մասին բոլոր քաղաքացինե-



րի համար, բայց տեղնուտեղը սահմանափակում են դրանք նստակեցությամբ ու կրթական և նույնիսկ գույքային ցենզով: Նրանք խոսում են քաղաքացիների հավասար իրավունքների մասին, բայց տեղն ու տեղը վերապահություն են անում, վոր այդ չի վերաբերում կանանց կամ նրանց վերաբերում է մասամբ: Յեվ այլն, և այլն»:

Ստալինյան նոր սահմանադրությունն ավարտում է խորհրդային հասարակարգի դեմոկրատացումը: ԽՍՀՄ-ի Սահմանադրությունն ապահովում է իսկական դեմոկրատիա ամբողջ ժողովրդի համար: Մեր Սահմանադրությունը չգիտի դեմոկրատական իրավունքներն ու ազատությունները խեղող վոչ մի վերապահում կամ սահմանափակում:

«ԽՍՀՄ-ի նոր Սահմանադրության նախագծի առանձնահատկությունն այն է, վոր նա ազատ է այդպիսի վերապահումներից ու սահմանափակումներից: Նրա համար գոյություն չունեն ակտիվ կամ պասսիվ քաղաքացիներ, նրա համար բոլոր քաղաքացիներն ակտիվ են: Նա տար-

թերություն չի ընդունում տղամարդկանց ու կանանց, «նստակյացների ու վոչ նստակյացների», ունեվորների ու չունեվորների, կրթվածների ու վոչ կրթվածների իրավունքների միջև: Նրա համար բոլոր քաղաքացիներն իրենց իրավունքներով հավասար են: Վո՛չ թե գույքային դրությունը, վո՛չ թե ազգային ծագումը, վո՛չ թե սեռը, վո՛չ թե պաշտոնեական դրությունը, այլ յուրաքանչյուր քաղաքացու անձնական ընդունակություններն ու անձնական աշխատանքն են վորոշում նրա դրությունը հասարակության մեջ» (Ստալին):

Մինչդեռ բուրժուազիան վոչնչացնում է դեմոկրատիայի վերջին մնացորդները, մի դեմոկրատիայի, վորը նա ինքը մի ժամանակ իր նվաճումն եր համարում, խորհրդային պետությունը գնալով ավելի լայն է ծավալում բուն ժողովրդական դեմոկրատիան, աշխատավորների դեմոկրատիան:

## ԻՆՉՈ՞Ւ ՄԵՆՔ ՇԱՀԱԳՈՐԾՈՂ ԴԱՍԱԿԱՐԳԵՐԻՆ ԶՐԿՈՒՄ ԵՅԻՆՔ ԸՆՏՐԱԿԱՆ ԻՐԱՎՈՒՆՔՆԵՐԻՑ

Բանվոր դասակարգը, տապալելով կալվածատերերի ու բուրժուազիայի իշխանու-



թյունն ու կազմակերպելով պրոլետարիատի
դիկտատուրա, խորհրդային Սահմանադրու-
թյան մեջ բացահայտորեն հռչակեց իր
նպատակը՝ վոչնչացնել մարդու շահագոր-
ծումը մարդու կողմից, վերացնել դասա-
կարգերը և դասակարգային բաժանում ա-
ռաջացնող պատճառները, կազմակերպել
սոցիալիստական պլանային տնտեսություն
և հասարակության բոլոր անդամներին
դարձնել միասնական կոմունիստական հա-
սարակության ազատ, ակտիվ ու գիտակից
աշխատավորներ: Պրոլետարիատի դիկտա-
տուրան ներկայացնում է իրենից բանվոր
դասակարգի և աշխատավոր գյուղացիու-
թյան դաշինքի հատուկ ձև բանվոր դա-
սակարգի ղեկավարությամբ: Պրոլետարիա-
տի դիկտատուրայի պետության մեջ իշ-
խանությունը պատկանում է բնակչության
աշխատավոր մեծամասնությանը, և վոչ
թե շահագործողների մի չնչին խմբակին:
Տապալված շահագործողների դիմադրու-
թյունն ընկճելու խնդիրն անհրաժեշտ դարձ
րեց լիովին հետ պահել նրանց պետական
իշխանության օրգանների մասնակցելուց և
զրկել նրանց ընտրական իրավունքներից:

Ստալինի ամենասերտ մասնակցությամբ Լենինի գրած, «Աշխատավոր և շահագործվող ժողովրդի իրավունքների դեկլարացիան» հռչակել էր՝

«... Այժմ, այն պահին, երբ ժողովուրդը վերջին պայքարն է մղում իրեն շահագործողների դեմ,— շահագործողները չեն կարող տեղ ունենալ իշխանության որգաններից վոչ մեկում: Իշխանությունը պետք է ամբողջովին և բացառապես պատկանի աշխատավոր մասսաներին...»[1]):

Բուրժուազիան ինքը, խորհուրդների դեմ իր մղած պայքարում, դեռ պրոլետարական Մեծ հեղափոխությունից առաջ և ապա հեղափոխության հաղթանակից հետո, խորհրդային իշխանության իր ցույց տված դիմադրությամբ, անհրաժեշտ դարձրեց զրկել շահագործողներին ընտրական իրավունքներից:

«Բուրժուազիայի կատաղելը ճնշվածների ինքնուրույն և ամենակարող (կամ ամեն ինչ պարփակող) կազմակերպության դեմ, բուրժուազիայի պայքարն, այն էլ ամենալկտի,

1) Լենին, հատոր XXII, էջ 177 (Ռուս. հրատարակություն):



ընչասեր, կեղտոտ պայքարը խորհուրդների դեմ, վերջապես, բուրժուազիայի (սկսած կադետներից մինչև աջ էսէրները, Միլյուկովից մինչև Կերենսկին) բացահայտ մասնակցությունը կորնիլովշչինային,— ահա՛ թե ինչը նախապատրաստեց բուրժուազիայի ձևական վտարումը խորհուրդներից»[2]):

Շահագործողներին ընտրական իրավունքներից զրկելը միանգամայն անհրաժեշտ էր խորհրդային պետության կյանքի ամբողջ նախորդ շրջանում: Նա ԽՍՀՄ-ի աշխատավորներին տվեց ամենաուժեղ զենք տապալված դասակարգերը ճնշելու և վերացնելու համար:

Մարքսիզմ-լենինիզմի թշնամիները, խորհրդային հասարակարգի թշնամիները, ամեն գույնի Կաուցկիները, առանձնապես կատաղել էյին հատկապես շահագործողներին բացեիբաց ընտրական իրավունքներից զրկելու պատճառով: Նրանք վոռնոց էյին բարձրացնում այն առթիվ, վոր բոլշևիկներն օրենքով ամրացնում են քաղաքական անհավասարությունը: Նրանք

2) Լենին, հատոր XXIII, էջ 369 (Ռուս. հրատարակություն):

աղաղակում էին, թե «ամբողջ հասարակական խմբերին ու դասակարգերին» քաղաքական իրավունքներից զրկելը «դեմոկրատիայի վոչնչացումն» է: Բուրժուական «ընդհանուր» ընտրական իրավունքը, նրանք գովերգում էին, վորպես իսկական դեմոկրատական հաստատություն, վորի խախտումն անթույլատրելի յե:

Ի հարկե, բուրժուական դեմոկրատիայի պայմաններում, ընդհանուր ընտրական իրավունքը ներկայացնում է բանվոր դասակարգի ամենանշանակալից նվաճումներից մեկը: Բայց դա չի փոխում այն փաստը, վոր բուրժուական դեմոկրատիան շարունակում է մնալ պոչատ, շինծու, կեղծավոր դեմոկրատիա, իսկական դեմոկրատիա միմիայն հարուստների համար:

Պրոլետարիատի դիկտատուրան, վորը միաժամանակ հանդիսանում է պրոլետարական դեմոկրատիա, միլիոն անգամ ավելի դեմոկրատական է ամենադեմոկրատական բուրժուական հանրապետությունից: Բանվոր դասակարգի դիկտատուրան պատմության մեջ առաջին անգամ պայմաններ է ստեղծում բոլոր աշխատավորներին իրոք



ներգրավելու պետության կառավարմանը, տնտեսական ու կուլտուրական շինարարությանը: Սակայն պատմության մեջ չտեսնված այդ ամենալայն դեմոկրատիան չի բացառում, այլ ընդհակառակը, յենթադրում է տապալված շահագործողների դիմադրության ճնշումը, վորոնք կատաղի պայքար են մղում բանվորների և գյուղացիների պետության դեմ, վորպեսզի վերականգնեն իրենց տիրապետությունը:

«Պրոլետարիատի դիկտատուրան, կոմունիզմին անցնելու ժամանակաշրջանում, առաջին անգամ տալիս է դեմոկրատիա ժողովրդի համար, մեծամասնության համար՝ փոքրամասնության, շահագործողներին ճնշելու անհրաժեշտության հետ միասին»[3]:

«Խոսում են դեմոկրատիայի մասին: Բայց ի՞նչ բան է դեմոկրատիան: Դեմոկրատիան կապիտալիստական յերկրներում, վորտեղ կան հակամարտ դասակարգեր, վերջին հաշվով դեմոկրատիա յե ուժեղների համար, դեմոկրատիա յե ունևոր փոքրամասնության համար: Դեմոկրատիան ՍՍՀՄ-ում,

[3]) Լենին, հատոր XXI, եջ 431:

ընդհանրական, դեմոկրատիա յե աշխատավորների համար, այսինքն՝ դեմոկրատիա յե բոլորի համար»[4]):

Զնայած բնակչության վորոշ խմբերի բացահայտ զրկմանն ընտրական իրավունքներից, չնայած այն բանին, վոր մենք մեր ընտրական իրավունքը պաշտոնապես ընդհանուր չենք անվանել, իրականում նա շատ ավելի ընդհանուր էր, քան բուրժուական պետությունների «ընդհանուր» ընտրական իրավունքը: Մինչդեռ բուրժուական դեմոկրատիայի յերկրներում ընտրական իրավունքից զրկվում են փաստորեն յերկրի հասակավոր բնակչության 20—25 տոկոսը, մեզ մոտ, ԽՍՀՄ-ում այդ տոկոսը յերբեք 90-ից պակաս չի յեղել: 1934 թ. սկզբներին ԽՍՀՄ-ում կար 2,5 տոկոս «ձայնազուրկ», վոր կազմում է 2 միլիոն հոգուց քիչ ավելի: Յեթե մենք այդ թիվը համեմատենք խորհուրդների ընտրողների ընդհանուր թվի հետ, վորոնք 1934 թվականին կազմում էյին

---

[4]) ՍՏԱԼԻՆ: Զեկուցում Խորհուրդների Համամիութենական Արտակարգ 8-րդ Համագումարում:



91 միլիոն հոգի, կտեսնենք, թե վորքան խղճուկ է բուրժուական «ընդհանուր» ընտրական իրավունքը՝ համեմատած խորհրդային հետ:

## ԻՆՉԸ ՆԱԽԱՊԱՏՐԱՍՏԵՑ ԽՈՐՀՐԴԱՅԻՆ ՀԱՄԱՐԱԿԱՐԳԻ ՀԵՏԱԳԱ ԴԵՄՈԿՐԱՏԱՑՈՒՄԸ

Սոցիալիզմի կառուցման վիթխարի հաղթանակները ԽՍՀՄ-ում արմատապես փոխեցին մեր յերկրի եկոնոմիկան և սոցիալական կազմը: Շահագործող դասակարգերի, ներառյալ նաև կուլակության, վերացման խնդիրը հաջողությամբ լուծված է: Արտադրության միջոցների 96 տոկոսը (ըստ արժեքի) պատկանում է պետությանը, կոլտնտեսություններին, կոոպերացիային: Մասնավոր սեփականությանը հասնում է միայն 4 տոկոսը: Մեր յերկրի ամբողջ հասարակական ու քաղաքական իրավակարգի հիմքն են հանդիսանում սոցիալիստական տնտեսությունը և սոցիալիստական հանրային սեփականությունը:

«...այժմ մենք ունենք ՆԵՊ-ի վերջին ժամանակաշրջանը՝ ՆԵՊ-ի վախճանը,

կապիտալիզմի լիակատար վերացման ժամանակաշրջանը՝ ժողովրդական տնտեսության բոլոր վոլորտներում...

... Կապիտալիզմն իսպառ վտարված է մեր արդյունաբերության վոլորտից, իսկ արտադրության սոցիալիստական ձևն այժմ անբաժանելիորեն տիրապետող սիստեմ է հանդիսանում մեր արդյունաբերության բնագավառում» (Ստալին)։

Գյուղատնտեսության մեջ մենք ունենք նորագույն տեխնիկայով զինված կոլտնտեսությունների և խորհտնտեսությունների համապարփակ սիստեմ։

Առևտրից վռնդված են կապիտալիստները և սպեկուլյանտները։ Ամբողջ ապրանքաշրջանառությունը գտնվում է պետության, կոոպերացիայի, կոլտնտեսությունների ձեռքում։

Վորպես դրա արդյունքը, մեր յերկրում վոչնչացված է մարդու շահագործումը մարդու կողմից։

«...այժմ մենք ունենք նոր, սոցիալիստական էկոնոմիկա, վորը չգիտե ճգնաժամեր ու գործազրկություն, չգիտե աղքատություն ու քայքայում և վորը տալիս է



քաղաքացիներին բոլոր հնարավորություններն ունեվոր ու կուլտուրական կյանքի համար» (Ստալին)։

Մեր պետության տնտեսական բազայում տեղի ունեցած հսկայական փոփոխություններն արմատական փոփոխություններ առաջացրին մեր յերկրի բնակչության նաև դասակարգային կազմում։ Այդ փոփոխությունների փայլուն վերլուծումը տվեց ընկեր Ստալինը Խորհուրդների Համամիութենական Արտակարգ 8-րդ Համագումարում իր տված զեկուցման մեջ։

«Կալվածատերերի դասակարգը, ինչպես հայտնի յե, արդեն վերացված եր քաղաքացիական պատերազմի հաղթական ավարտման հետևանքով։ Ինչ վերաբերում է մյուս շահագործող դասակարգերին, ապա նրանց ել բաժին ընկավ կալվածատերերի դասակարգի բաղդը։ Չկա այլևս կապիտալիստների դասակարգն արդյունաբերության բնագավառում։ Չկա այլևս կուլակների դասակարգը գյուղատնտեսության բնագավառում։ Չկան այլևս վաճառականներն ու սպեկուլյանտներն ապրանքաշրջանառության բնագավառում։ Այդպիսով,

բոլոր շահագործող դասակարգերը վերացվեցին։

Մնաց բանվոր դասակարգը։

Մնաց գյուղացիների դասակարգը։

Մնաց ինտելիգենցիան» (Ստալին)։

Սակայն մնացած այդ սոցիալական խմբակներն էլ մեծ փոփոխություններ կրեցին և չմնացին այնպես, ինչպիսին էին նրանք կապիտալիզմի ժամանակաշրջանում։

Մեր բանվոր դասակարգն այլևս պրոլետարիատ չէ։ Պրոլետարիատն արտադրության գործիքներից ու միջոցներից զուրկ դասակարգն է տնտեսության այնպիսի սիստեմում, վորտեղ արտադրության գործիքներն ու միջոցները պատկանում են կապիտալիստներին և վորտեղ կապիտալիստները շահագործում են պրոլետարիատին։

Մեր բանվոր դասակարգը վոչ միայն զուրկ չէ արտադրության գործիքներից ու միջոցներից այլ ընդհակառակն, նա տիրապետում է դրանց ամբողջ ժողովրդի հետ միասին։ Մեզ մոտ բանվոր դասակարգի շահագործման ամեն մի հնարավորություն բացառված է։ ԽՍՀՄ-ի բանվոր դասակարգը վոչնչացրեց տնտեսության կա-



պիտալիստական սիստեմը, հաստատեց արտադրության գործիքների ու միջոցների սոցիալիստական սեփականություն։ Նա խորհրդային հասարակությունն ուղղում է կոմունիզմի ճանապարհով։

ԽՍՀՄ-ի բանվոր դասակարգը բոլորովին նոր բանվոր դասակարգ է, շահագործումից ազատագրված, վորի նմանը դեռ չգիտի մարդկության պատմությունը։

Գյուղացիությունը, վորն իր գերակշռող մեծամասնությամբ արդեն վոտք է դրել կոլտնտեսային շինարարության ճանապարհը, նույնպես բոլորովին այլ գյուղացիություն է դարձել, քան նա յե կապիտալիստական հասարակության մեջ։ Նա այլևս կալվածատերերի, կուլակների ու սպեկուլյանտների կողմից շահագործվող մանր մենատնտես սեփականատերերի դասակարգ չէ։ Մեր գյուղացիությունն իր աշխատանքն ու իր ունեցվածքը խարսխում է վոչ թե անձնական աշխատանքի ու հետամնաց տեխնիկայի վրա, այլ կոլեկտիվ աշխատանքի ու ժամանակակից տեխնիկայի վրա։ Մեր գյուղացիության տնտեսության հիմքն է կազմում վոչ թե մասնավոր

սեփականությունը, այլ կոլեկտիվ աշխատանքի բազայի վրա աճած կոլեկտիվ սեփականությունը:

Կատարելապես նոր է նաև ինտելիգենցիան: Փոխվեց նրա կազմը: Մեր ինտելիգենցիայի 80—90 տոկոսը բաղկացած է բանվորների, գյուղացիների և աշխատավորության այլ խավերի զավակներից: Մեր խորհրդային ինտելիգենցիան ծառայում է ժողովրդին: Նա, բանվորների և գյուղացիների հետ միասին, ակտիվ մասնակցում է սոցիալիստական հասարակության կառուցմանը: Տնտեսական ու կուլտուրական շինարարության ճակատների մեծ հաղթանակները, վորոնք ձեռք են բերել ԽՍՀՄ-ի աշխատավորները կուսակցության և նրա մեծ առաջնորդ և ուսուցիչ ընկեր Ստալինի ղեկավարությամբ, մեր հասարակության կառուցվածքում տեղի ունեցած վիթխարի փոփոխությունները նախապատրաստեցին խորհրդային սիստեմի հետագա դեմոկրատացումը:

ԽՍՀՄ-ում ներքևից մինչև վերև՝ սկսած գյուղխորհրդից մինչև համամիութենական օրենսդրական օրգանը, մտցվեցին խոր-



հրդային իշխանության բոլոր օրգանների ընդհանուր, ուղղակի, հավասար ընտրություններ գաղտնի քվեարկությամբ: Ընկ. Մոլոտովը, Խորհուրդների համամիութենական 7-րդ Համագումարում «Խորհրդային Սահմանադրության փոփոխությունների մասին» իր տված զեկուցման մեջ ասել էր՝ «Յեթե կապիտալի յերկրներում բուրժուազիան թքակոծում է այն, ինչ վոր գրված է հենց իր դասագրքերում, իր իսկ գրականության ու հասարակագիտության մեջ, վորպես բուրժուական պետության բարձրագույն նվաճումները, ապա խորհրդային իշխանությունը վերցնում է ժամանակակից պետությունների զարգացման մեջ գոյություն ունեցող լավագույն ամեն ինչ և համարձակ կենսագործում է դրանք հոգուտ աշխատավորության շահերի ու ընդդեմ շահագործողների, հոգուտ սոցիալիզմի կառուցման շահերի: Խորհուրդներն յեղել են և մնում են մեր հասարակարգի հիմքը: Բայց այն, ինչ վոր լավագույնն էր պառլամենտարիզմում, այն է՝ պետական կառավարման օրգանների համար ներկայացուցիչների ուղղակի, հավասար ու գաղտ-

նի ընտրությունները՝ բոլոր աշխատավորների ընդհանուր մասնակցությամբ, ինչպես պահանջում է խորհրդային Սահմանադրությունը, այժմ պետք է լրիվին իրագործվի Խորհրդային Միության մեջ»:

Խորհրդային Միության թշնամիները ձգտում են մեզ մոտ գաղտնի քվեարկությամբ ընդհանուր, ուղղակի, հավասար ընտրություններ մտցնելը մեկնաբանել, որպես նահանջ պրոլետարիատի դիկտատուրայի սկզբունքներից և շրջադարձ դեպի բուրժուական դեմոկրատական իրավակարգը: Այդպիսի պնդումների զրպարտիչ բնույթն ակնհայտ է:

«Յեթե բանվոր դասակարգի դիկտատուրայի բազայի ընդարձակումը և դիկտատուրայի վերածումը հասարակության պետական ղեկավարման ավելի ճկուն, հետևաբար ավելի հզոր սիստեմի՝ մեկնաբանվում է նրանց կողմից ոչ որպես բանվոր դասակարգի դիկտատուրայի ուժեղացում, այլ որպես նրա թուլացում կամ նույնիսկ որպես հրաժարումն դրանից, ապա թույլատրելի յե հարցնել. իսկ ընդհանրապես գիտե՞ն արդյոք այդ պա-



րոնները, թե ինչ բան է բանվոր դասակարգի դիկտատուրան» (Ստալին):

Խորհուրդները յեղել են և մնում են
մեզ մոտ, որպես պետական կարգի հիմ-
քը: Պետական իշխանությունը յեղել է և
մնում է որպես աշխատավորների իշխա-
նությունը: Բանվոր դասակարգի ղեկա-
վար դերը պահպանվում է լիակատար
չափով: Լենին-Ստալինի կուսակցությու-
նըն յեղել է և մնում է մեր պետական ու
հասարակական կարգին ուղղություն տը-
վող ուժը, պետական ու հասարակական
բոլոր կազմակերպությունների ղեկավար
կորիզը: Ընդհանուր, ուղղակի, հավասար
ընտրությունները գաղտնի քվեարկու-
թյամբ, սոցիալիստական պետության
պայմաններում, ունեն բոլորովին այլ
իմաստ ու բովանդակություն, քան բուր-
ժուական-դեմոկրատական պետություննե-
րում: Նրանց մոտ «ընդհանուր» ընտրու-
թյունները գլխավորապես նպատակ ու-
նեն սքողել, վարագուրել բուրժուազիայի
դիկտատուրան:

Մեր նոր ընտրական սիստեմը «...կծա-
ռայի ինչպես խորհուրդների ընտրու-

թյան, այնպես էլ խորհուրդների ամբողջ աշխատանքի հետագա աշխուժացմանը։

Այդ սիստեմը չի կարող թափ չտալ դեպքերի պոչից ընթացող թույլ կազմակերպությունններին և չի կարող չհարվածել բյուրոկրատացածներին, մասսաներից կտրվածներին։ Մյուս կողմից, այդ սիստեմը հեշտացնում է նոր ուժերի առաջքաշումն առաջավոր բանվորներից, գյուղացիներից ու ինտելիգենտներից, վորոնք պետք է փոխարինեն հետամնաց կամ չհոլնիկացած տարրերին»[5])։

Յեթե կապիտալիզմի յերկրներում ընդհանուր ընտրական իրավունքը, պաշտոնապես պրոգրեսիվ լինելով հանդերձ, այնուամենայնիվ հանդիսանում է աշխատավոր մասսաներին խաբելու գործիքներից մեկը, ապա սոցիալիստական պետության մեջ նա մի հզոր գործիք է աշխատավորներին ավելի լայն չափով ներգրավելու սոցիալիստական շինարարությանը,

[5]) Մոլոտով։— Ճառ՝ Խորհուրդների Համամիութենական Արտակարգ 8-րդ Համագումարում։



պետական կառավարմանը, վերեվից մինչեվ ներքեվ բոլոր որգանների աշխատանքի վերահսկողությանը։

## ՄԵՐ ԸՆՏՐԱԿԱՆ ԻՐԱՎՈՒՆՔԸ

Խորհրդային ընտրական իրավունքը
միշտ յեղել է աշխատավորների ընդհա-
նուր ընտրական իրավունքը։ Խորհրդային
պետությունն իր գոյության առաջին իսկ
որից վոչնչացրեց ընտրական ամեն մի
տարբերություն ըստ սեռի, ազգության,
դավանության, քաղաքացիության։ Խոր-
հրդային Սահմանադրությունը վերաց-
րեց ակտիվ (ընտրելու իրավունք) և պա-
սիվ (ընտրվելու իրավունք) ընտրական
իրավունքի տարբերությունը, վորն եյա-
կան դեր է խաղում բուրժուական սահմա-
նադրություններում։ Պասիվ ընտրական
իրավունքի համար բուրժուական սահմա-
նադրությունները վորպես կանոն, տարի
քի ավելի բարձր ցենզ են սահմանում։
Այդ բացատրվում է նրանով, վոր բուր-

ժուազիան ձգտում է պառլամենտ չթողնել բնակչության յերիտասարդ և հեղափոխական տեսակետից ավելի ակտիվ մասը։ Խորհրդային պետությունը սահմանեց հասակի աշխարհիս ամենացածր ցենզը՝ 18 տարեկան, տալով այդ տարիքին հասած աշխատավորներին ընտրելու և ընտրվելու իրավունք։ Ընտրական իրավունքներից զրկելու իմաստով, ինչպես արդեն ասեցինք, բացառություն եր արված միմիայն շահագործող և դասակարգայնորեն թշնամի տարրերի համար։

Ներկայումս, յերբ սոցիալիզմը ԽՍՀՄ-ում հաղթեց վերջնականապես և անդառնալիորեն, հնարավոր դարձավ մեր ընտրական իրավունքը դարձնել ընդհանուր, առանց վորևէ դասակարգային տարբերության։

Պրոլետարիատի դիկտատուրայի, պրոլետարական դեմոկրատիայի ամբողջ զարգացումն անշեղորեն հանգում եր դրան։ Լենինը խորհրդային իշխանությանը վերաբերյալ իր այն 10 թեզերում, վորոնք պատրաստել եր նա ՌԿԿ (բ)-ի 7-րդ համագումարի համար, գրել եր՝ «Պետու-



թյան խորհրդային կազմակերպման հետագա զարգացումը պետք է կայանա նրանում, վոր խորհրդի յուրաքանչյուր անդամ անպայման մշտական աշխատանք կատարի պետության կառավարման ապարատում, մասնակցելով հանդերձ խորհրդի ժողովներին. ապա նրանում, վոր ամբողջ բնակչությունը գլխովին աստիճանաբար ներգրավվի խորհրդային կազմակերպությանը մասնակցելու (աշխատավորների կազմակերպություններին յենթարկվելու պայմանով), ինչպես և պետական կառավարմանը սպասարկելու»[6]։ Յեվ ապա «Խորհրդային Սահմանադրության տարածումը, շահագործողների դիմադրության դադարեցմանը զուգընթաց, ամբողջ բնակչության վրա»[7]։

ԽՍՀՄ-ի Ստալինյան նոր Սահմանադրության 135-րդ հոդվածը սահմանում է՝ «Պատգամավորների ընտրությունները ընդհանուր են՝ ԽՍՀՄ-ի բոլոր քաղաքացիները, վորոնց 18 տարին լրացել է, անկախ ռասսայական կամ ազգային

6) ԼԵՆԻՆ, հատոր 22, եջ 372։

7) Նույն տեղում։

պատկանելությունից, դավանանքից, կրթական ցենզից, նստակեցությունից, սոցիալական ծագումից, գույքային դրությունից և անցյալ գործունեությունից, իրավունք ունեն մասնակցելու պատգամավորների ընտրություններին և ընտրվելու, բացի խելագարներից և այն անձերից, վորոնք դատարանի կողմից դատապարտված են ընտրական իրավունքների զրկմամբ»: Յեվ 137-րդ հոդվածը՝ «Կանայք ընտրելու և ընտրվելու իրավունքից օգտվում են տղամարդկանց հետ հավասարապես»:

Նոր Սահմանադրության մեջ խորհրդային իշխանության բոլոր օրգանները՝ ներքևից մինչև վերև, ընտրելու յե յերկրի բնակչությունն անմիջականորեն, ուղղակի ընտրությունների միջոցով: Ստալինյան Սահմանադրության 139-րդ հոդվածն ասում է՝ «Պատգամավորների ընտրություններն ուղղակի յեն՝ աշխատավորների պատգամավորների բոլոր Խորհուրդների ընտրությունները՝ սկսած աշխատավորների պատգամավորների գյուղական ու քաղաքային Խորհրդից մինչև ԽՍՀՄ-ի Գերագույն Խորհուրդը, քաղա-



քայինները կատարում են անմիջականորեն, ուղղակի ընտրությունների միջոցով»:

Նոր Սահմանադրությունը մինչև այժմ գործող վոչ լիովին հավասար ընտրությունները փոխարինում է հավասար ընտրություններով: Մինչև Նոր Սահմանադրությունը, բանվորները, համեմատած գյուղացիների հետ, վորոշ առավելություններ ունեյին խորհրդային օրգանների ընտրությունների ժամանակ: Որինակ՝ Միութենական հանրապետությունների խորհուրդների համագումարի համար և համամիութենական համագումարների համար քաղաքային բնակչությունից պատվիրակներ եյին ընտրվում 25 հազար ընտրողից մի պատվիրակ, իսկ գյուղացիական բնակչության 125 հազար հոգուց մի պատվիրակ: Ճիշտ է, այդ անհավասարությունն այնքան զգալի չէ, ինչպես կարող է թվալ առաջին հայացքից՝ առաջին դեպքում (քաղաքներից կատարվող ընտրությունները) հաշիվը հիմնված էր սոսկ ընտրողների թվի վրա, այսինքն այն անձանց, վորոնք ունեն ընտրական իրավունք, իսկ յերկրորդ դեպքում (համա-

դումարների կողմից կատարվող ընտրությունները) բնակչության վորոշ թվի վրա, վորի մեջ մտնում եյին ընտրական տարիքին չհասած և ընտրական իրավունքներից զրկված անձինք։ Այնուամենայնիվ, անտարակույս, բանվոր դասակարգի կողմը վորոշ առավելություններ կային։ Մեր զարգացման անցյալ ետապում այդ առավելություններն անհրաժեշտ եյին, վորովհետև նրանք կազմակերպչորեն ամրապնդում եյին բանվոր դասակարգի ղեկավար դերը խորհրդային պետության մեջ։

Բայց այդ չի նշանակում, վոր բանվոր դասակարգի ղեկավար դերը վերացվում ե։ Բանվոր դասակարգը յեղել է և մնում է աշխատավորների ավանգարդը։ Հասարակության պետական կառավարումը (դիկտատուրան) պատկանում է բանվոր դասակարգին, վորպես հասարակության առաջավոր դասակարգին։ Սակայն այժմ կարիք չկա սահմանադրությամբ ամրապնդել բանվոր դասակարգի ընտրական առավելությունները։ Բանվորների և գյուղացիների ընտրական իրավունքների հա-

վասարեցումն էլ ավելի կմոտեցնի նրանց, ավելի կամրացի բանվորների ու գյուղացիների դաշինքը և դրանով իսկ էլ ավելի կբարձրացնի բանվոր դասակարգի ու կոմունիստական կուսակցության, վորպես սոցիալիստական շինարարության ղեկավար ուժի, հեղինակությունը։ Ընկեր Մոլոտովը Խորհուրդների 7-րդ Համագումարում իր տված զեկուցման մեջ մատնանշել եր, թե «վոչ կատարելապես հավասար ընտրությունները աշխատավորների ամբողջ մասսայի համար հավասար ընտրություններով փոխարինելը պետք ե ե՛լ ավելի մոտեցնի բանվորներին ու գյուղացիներին, պետք ե ե՛լ ավելի ամրացնի նրանց դաշինքը, հետեվաբար նաև խորհրդային իշխանության զորությունը»։

Կուսակցությունն իր ծրագրում բացատրում եր պրոլետարիատի ընտրական առավելությունների ժամանակավոր բնույթը, մատնանշում եր, վոր դրանք կապված են գյուղի սոցիալիստական վերափոխման պատմական դժվարությունների հետ։ Այժմ, յերբ գյուղացիների ինը տասներորդը վերածվել ե գյուղի սո-

ցիալիստական աշխատավորների և սոցիալիստական հասարակարգը հաղթանակել է նաև գյուղում, հիմք չկա ընտրական անհավասարությունը պահպանելու: Սահմանադրության 136-րդ հոդվածն ասում է. «Պատգամավորների ընտրությունները հավասար են. յուրաքանչյուր քաղաքացի ունի մի ձայն, բոլոր քաղաքացիներն ընտրություններին մասնակցում են հավասար հիմունքերով»:

Գաղտնի ընտրություններ մտցնելը կըդառնա այն կարևորագույն ձևերից մեկը, որով կվերացվեն մեր ապարատի աշխատանքում դեռ գոյություն ունեցող թերությունները, որով կբարելավվի նրա աշխատանքը և կամրապնդվի խորհուրդների կապն աշխատավորների հետ:

Ընկեր Ստալինը, Ռոյ Հովարդի հետ իր ունեցած զրույցում, ասել էր՝ «Մեզ մոտ քիչ չեն վատ աշխատող հիմնարկներ: Պատահում է, որ իշխանության այս կամ այն տեղական օրգանը չի կարողանում բավարարել քաղաքի ու գյուղի աշխատավորության այս կամ այն բազմակողմանի ու հարաճուն պահանջներից մի քանիսը: Լավ



դպրոց կառուցե՞լ ես արդյոք, թե չես կառուցել: Բնակարանային պայմանները բարելավե՞լ ես արդյոք դու, դու բյուրոկրատ չե՞ս արդյոք: Ուզե՞լ ես արդյո՞ք դու մեր աշխատանքն ավելի արդյունավետ, մեր կյանքն ավելի կուլտուրական դարձնելու: Ահա այն չափանիշները, վորով մոտենալու յեն միլիոնավոր ընտրողները թեկնածուներին, դեն շպրտելով անպետքներին, ջնջելով նրանց ցուցակներից, առաջ քաշելով լավագույններին և առաջադրելով նրանց թեկնածությունը: Այո՛, ընտրական պայքարն աշխույժ կլինի, նա կընթանա բազմաթիվ ամենասուր հարցերի շուրջը, գլխավորապես ժողովրդի համար առաջնակարգ նշանակություն ունեցող գործնական հարցերի շուրջը: Մեր նոր ընտրական սիստեմը ձիգ կտա մեր բոլոր հիմնարկներին ու կազմակերպություններին, կհարկադրի նրանց բարելավել իրենց աշխատանքը: Ընդհանուր, հավասար, ուղղակի ու գաղտնի ընտրությունները ԽՍՀՄ-ում մի խարազան կըհանդիսանան ազգաբնակչության ձեռքում՝ իշխանության վատ աշխատող օրգանների

դեմ: Մեր նոր խորհրդային Սահմանադրությունը, իմ կարծիքով, ամենադեմոկրատական Սահմանադրությունը կլինի աշխարհում գոյություն ունեցող բոլոր սահմանադրությունների մեջ»:

Ստեղծելով ազգաբնակչության ավելի կենդանի, ավելի անմիջական և ավելի ամուր կապ խորհրդային իշխանության օրգանների հետ, ընդհանուր, ուղղակի, հավասար ընտրական իրավունքը դաղտնի քվեարկությամբ, ել ավելի կամրացնի խորհրդային պետության զորությունը, կամրացնի բանվոր դասակարգի դիկտատուրան:

Մինչև վերջը ծավալելով խորհրդային դեմոկրատիան, մենք դրա հետ միասին ել ավելի յենք ամրացնում բանվոր դասակարգի դիկտատուրան մեր յերկրում:

Ստալինյան նոր Սահմանադրությունը հանդիսանում է «սոցիալիզմի հաղթանակի օրենսդրական ամրացումը, ինդուստրացման, կոլեկտիվացման և դեմոկրատացման հաջողությունների օրենսդրական ամրացումը...»: Այդ հաջողությունները մենք ձեռք ենք բերել մեր կուսակցության և



մեծ Ստալինի հանճարեղ ղեկավարությամբ, դասակարգային թշնամիների և ամեն գույնի նրանց գործակալների դեմ մղվող պայքարում:

Սոցիալիզմի հաղթանակներն ուժեղացնում են ջախջախված չհաշտվող դասակարգերի մնացորդների դիմադրությունը: Չկա այնպիսի ստորություն ու սրիկայություն, որին չդիմեն մեր թշնամիները՝ հանուն կապիտալիզմի վերականգնմանը մեր յերկրում: Ուստի հեղափոխական զգաստությունն այսուհետեվ ել մնում է որպես հիմնական պայմաններից մեկը դեպի կոմունիզմը մեր կատարած հաղթական առաջընթացի համար:

# ՈԳՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐԻՆ

Խորհուրդների 8-րդ Համամիութենական արտակարգ Համագումարի հաստատած ստալինյան Սահմանադրության, ընկեր Ստալինի զեկուցման և Համագումարի նյութերի մասսայական ուսումնասիրման ընթացքում տեղերում մեր ագիտատորները և զրուցարար ընթերցողները հանդիպում են իրենց անծանոթ միջազգային բառերի:

Նկատի ունենալով այն, վոր մի քանի ընկերներ իրենց անհասկանալի զանազան բառերի բացատրության համար դիմել են մեզ, ուստի անհրաժեշտ համարեցինք ագիտատորներին և զրուցարար-ընթերցողներին ոգնելու համար ստորեվ տալ մի շարք բառերի բացատրությունը:

## ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԱՌԱՐԱՆ

Անտագոնիստ (հակամարտ) դասակարգեր՝ անտագոնիզմ բառից, վոր նշանակում



է անհաշտելի հակասություն,—իրար թըշնամի յերկու ուժերի պայքար:

Անտագոնիստ դասակարգեր — այն դասակարգերը, վորոնց միջև գոյություն ունեն անհաշտելի հակասություններ: Դրանք են՝ շահագործող դասակարգերի (կապիտալիստների, կալվածատերերի, կուլակների) և շահագործվող դասակարգերի (պրոլետարների և աշխատավոր գյուղացիների) միջև յեղած հակասությունները: Այդ դասակարգերի շահերը փոխադարձ հակադիր են, հակառակ են, վորովհետև առաջինները՝ շահագործողները, ապրում են ի հաշիվ շահագործվողների: Կապիտալիզմի պայմաններում առաջինները հանդիսանում են տիրապետող դասակարգ, մյուսները՝ շահագործվող դասակարգ:

ԽՍՀՄ-ում այլևս անտագոնիստ (հակամարտ) դասակարգեր չկան, չկա մարդու շահագործումը մարդու կողմից: «ԽՍՀՄ-ում կա միայն յերկու դասակարգ՝ բանվորներ և գյուղացիներ, վորոնց շահերը վոչ միայն թշնամական չեն, այլ ընդհակառակն՝ բարեկամական են» (Ստալին): Թե առաջինների և թե յերկրորդների կյանքի նյութական ու կուլտուրական մակար-

դակի աճման հիմքն ե կազմում բովանդակ ժողովրդական տնտեսության աճը և ամբողջ սոցիալիստական հասարակարգերի ամրապնդումը:

Ատոմներ՝ մանրագույն մասնիկներ, վորոնցից բաղկացած են մարմինները բնության մեջ՝ մարդու մարմինը, ամեն մի կենդանու որգանիզմը, բույսը, հողը, քարերը, ջուրը, օդը և այլն:

Մինչև 20-րդ դարի սկիզբը ատոմն անբաժանելի յեր համարվում: Սակայն վերջին տարիներս գիտնականներին հաջողվեց ապացուցել, վոր ատոմն ել իր հերթին բաղկացած ե ե՛լ ավելի մանր մասնիկներից:

«Ատոմել» բառն առաջ ե յեկել ատոմ բառից և նշանակում ե՝ փշրել, մանրացնել, վերածել մանրագույն մասնիկների:

Հոմերիկ՝ ահագին, հսկայական: Այդ բառն իր ծագումն ե առել հունական հռչակավոր բանաստեղծ Հոմերոսի անունից, վորն ապրում եր մեր թվարկությունից առաջ 9-րդ դարում: Հոմերոսի «Իլիական» և «Վոդիսական» պոեմների հերոսներն աչքի եյին ընկնում իրենց արտասովոր, դերբնական ձայնով, ախորժակով, ուժով: Դրանից են առաջ յեկել «հոմերիկ



ախորժակ», «հոմերիկ ուժ» արտահայտությունները, չատ հաճախ գործածվող «հոմերիկ ծիծաղ» արտահայտությունը և այլն: Ընկեր Մ. Մ. Լիտվինովը Խորհուրդների Համամիութենական Արտակարգ 8-րդ Համագումարի ամբիոնից «հոմերիկ» անվանեց քառամյա այն ջանքերը, վորոնք գործադրեց գերմանական ֆաշիզմը «բոլոր հնարավոր միջոցներով արմատախիլ անելու իր յերկրում վոչ միայն կոմունիզմը և մարքսիզմը, այլև նույնիսկ դեմոկրատիզմը»:

Ջունգլի՝ ճահճոտ անտառային թփուտներ Հնդկաստանում, վորտեղ բույն են դնում թունավոր ոձեր, վագրեր, փղեր, գոմեշներ և այլ կենդանիներ: Ջունգլիներն անանցանելի յեն և նրանց կլիման կործա-
թեր ե մարդու համար: Փոխաբերական իմաստով՝ «խճճվել ջունգլիներում» նշանակում ե մի վորևե հարց լուծելիս չեղվել ճիշտ ուղուց և փակուղու մեջ ընկնել:

Հրեական հեռագրական գործակալությունը Ամերիկայից 1931 թ. հունվարի 12-ին ընկեր Ստալինին հարց եր տվել հակահրեական հոսանքի՝ անտիսեմիտիզմի մասին: Ընկեր Ստալինն իր պատասխանում, խոսե-

լով այն վտանգի մասին, վորը ներկայացնում է անտիսեմիտիզմը (հակահրեականությունը) աշխատավորների համար, հակահրեականությունը համեմատեց այն պատիր կածանի հետ, վորը շեղում է նրանց ճիշտ ճանապարհից և տանում է դեպի ջունգլիները:

«Պոտյոմկինյան գյուղեր»՝ Պոտյոմկինը իշխան էր, խոշոր պալատական ավագանի, վորը փաստորեն կառավարում էր Ռուսաստանը Եկատերինա 2-րդի թագավորության ժամանակ՝ 18-րդ դարում: Նա աչքի ընկնող մասնակցություն է ցուցաբերել այն պատերազմին, վորի վախճանը յեղավ ներկա Խորհրդային Ուկրաինայի հարավային մասի և Ղրիմի թերակղզու անջատումը Թյուրքիայից և դրանց միացումը Ռուսաստանին: Այդ ժամանակները Ռուսաստանին միացված այդ յերկիրը համարյա ամայի տափաստան էր: Եկատերինա 2-րդ թագուհին Պոտյոմկինին հանձնարարեց կազմակերպել, բնակեցնել և բարեկարգել նվաճված յերկիրը: Սակայն Պոտյոմկինը գըրպանեց այդ նպատակով գանձարանից բաց թողնված խոշոր գումարները և նրա բոլոր զեկուցումները թագուհուն՝ միացված տե-



րիտորիաների «նվաճումների» մասին սկզբից մինչև վերջը մտացածին եյին: 1783 թվականին Եկատերինան վորոշեց անձամբ ստուգել, թե վորքան ճշմարիտ են Պոտյոմկինի զեկուցումները, և ուղևորվեց դեպի հարավ: Բայց խորամանկ իշխանը իսկույն յելք գտավ: Թագուհու ուղևորության ճանապարհներին շտապ կարգով կառուցվեցին մի քանի գյուղեր նոր տներով: Համապատասխան կերպով հագնված և այդ գյուղերը քշված մի քանի տասնյակ գյուղացիներ, Պոտյոմկինի գործակալների հսկողության տակ, աղ ու հացով դիմավորեցին Եկատերինային և «մայր-թագուհուն առասպելներ եյին պատմում «ազատ» կյանքի» մասին, ցուցադրում եյին «բնակչության ու յերկրի բարեկարգության աճը»: Արդյոք Պոտյոմկինին հաջողվե՞ց այդ «դեկորներով» թող փչել Եկատերինայի աչքին, թե՞ Եկատերինան ինքը դեմ չեր, վոր իրեն խաբեն— հաստատ հայտնի չե: Բայց այդ ժամանակից ի վեր, «Պոտյոմկինյան գյուղեր» արտահայտությունը հաստատապես մտավ քաղաքական բառարանի մեջ, նշանակելով «աչքին թող փչելու», սուտ ցուցադրական ձեռնարկումներով ի-

րական գրությունը թաքցնելու ամեն տեսակ փորձեր:

Բուրժուական մամուլը քանիցս «պոտյոմկինյան գյուղեր» է անվանել Խորհրդային Միության մեծ նվաճումները: Ժամանակին «պոտյոմկինյան գյուղեր» են անվանել մեր արդյունաբերական հսկաները և նույնիսկ ամբողջ առաջին հնգամյա ծրագիրը: Կապիտալիստական յերկրների թերթերը «պոտյոմկինյան գյուղերի» մասին շատ են գրել այն հսկայական նվաճումների կապակցությամբ, վորոնք ձեռք են բերվել ԽՍՀՄ-ում գյուղատնտեսության կոլեկտիվացման ասպարիզում: Այժմ, բուրժուական մամուլի մի մասը ու նախևառաջ գերմանական ֆաշիզմի ոֆիցիոզի (կառավարության մաս) «Դոյչե դիպլոմատիշ-պոլիտիշե կորրեսպոնդենց» թերթը, նույնպես «պոտյոմկինյան գյուղ» է հայտարարում ԽՍՀՄ-ի նոր Սահմանադրության նախագիծը: Ընկեր Ստալինը, Խորհուրդների Համամիութենական Արտակարգ 8-րդ Համագումարում ջախջախիչ հարված հասցրեց հիտլերյան բանակի այդ պատուհաս քննադատներին ու զրպարտիչներին: Նա զըրպարտիչ շաղակրատությանը հակադրեց անհերքելի փաստերը:



«Հարց է ծագում,— ասաց ընկեր Ստալինը,— այդ բոլորից հետո ինչի՞ յե հանգում գերմանական ոֆիցիոզի պարոնների շաղակրատությունը «պոտյոմկինյան գյուղերի» մասին, յեթե վոչ այն բանին, վոր նրանք նպատակ են դրել թաքցնել ժողովրդից ճշմարտությունը ԽՍՀՄ-ի մասին, մոլորեցնելու ժողովրդին, խաբելու նրան»։

Պրոկրուստոսի անկողինը՝ Հին-հունական Պրոկրուստոս ավազակի առասպելից վերցված արտահայտություն: Պրոկրուստոսն իր բնակարանն եր գրավում անցորդներին, պառկեցնում եր նրանց իր անկողինը և կամ կտրում եր նրանց վոտները, յեթե դրանք անկողնից յերկար եյին, կամ պարաններով քաշում, ձիգ եր տալիս նրանց մարմինը, յեթե վոտները անկողնի ծայրին չեյին հասնում: Առասպելին համապատասխան, ասացվածք դարձած «Պրոկրուստոսի անկողին» արտահայտությունը նշանակում է՝ աշխատել վորևե բան մեքենայաբար և անիմաստ կերպով հարմարեցնել նրան անհամապատասխան ստանդարտին, չափին՝ ակնհայտորեն ի վնաս գործի եյության:

Ռեստավրացիա՝ վերականգնում: Այդ իմաստով, որինակ, ասում են՝ ժամանակից

խունացած հին նկարների, հին շենքերի ռեստավրացիան (վերականգնումը) և այլն։ Քաղաքական բառարանում «ռեստավրացիա» բառը սովորաբար նշանակում ե նախկին սոցիալ-քաղաքական հասարակարգի վերականգնումը՝ հեղափոխության կողմից նրա ջախջախվելուց, տապալվելուց հետո։ Ֆրանսիան 18-րդ դարի վերջերի բուրժուական հեղափոխության ժամանակաշրջանից հետո, ապրեց միապետության ռեստավրացիայի (վերականգնման) շրջանը։ Մեր յերկրում սպիտակ բանակները, արտասահմանյան ինտերվենտների օգնությամբ, 1918–1920 թվականներին պայքար եյին մղում խորհրդային իշխանության դեմ՝ տապալված կապիտալիստական հասարակարգը ռեստավրացիայի յենթարկելու (վերականգնելու) նպատակով։ Տրոցկիստական-զինովյևյան հակահեղափոխական բանդան նույնպես ձգտում եր ֆաշիստական Գերմանիայի Գեստապոյի օգնությամբ, ռեստավրացիայի յենթարկել (վերականգնել) կապիտալիզմը մեր սոցիալիստական յերկրում։ Իսպանիայում ֆաշիստ խռովարարները նույնպես ձգտում են վերականգնել խոշոր կապիտալի ու ֆեոդալ կալվածա



տերերի և նույնիսկ միապետության անսահման դիկտատուրան։

Սկեպտիկ՝ հնում այդպես եյին անվանում փիլիսոփայական այն ուսմունքի հետևորդներին, վորոնք ժխտում եյին, թե մարդու համար հնարավոր ե ճանաչել օբյեկտիվ աշխարհը, այսինքն այդ աշխարհի երևույթներն ու զարգացման օրենքները, վորով շրջապատված ե մարդը և վորի մասն ե կազմում նա ինքը։ Այժմ «սկեպտիկ» բառը գործ ե ածվում փոխաբերական իմաստով՝ սկեպտիկ են անվանում այն մարդուն, վորն ամեն բանին վերաբերվում ե անհավատությամբ, կասկածանքի յե յենթարկում ամեն ինչ։

Ցենզ՝ այն պայմանները, վորով մեկին թույլատրվում ե օգտվել քաղաքական այս կամ այն (նախևառաջ ընտրական) իրավունքներից։ Կապիտալիստական յերկրներում գոյություն ունեն հետևյալ ցենզերը՝ 1) գույքային, այսինքն վորոշ արժեք ունեցող գույքի տեր լինելը, 2) կրթական՝ կրթության վորոշ աստիճանը, 3) տարիքային՝ վորոշ տարիքի հասնելը, 4) նստակեցության՝ վորոշ ժամանակվա ընթացքում տվյալ վայրում ապրելը և այլն։ Ցենզի (մանավանդ գույքային և կրթական

ցենզի) պահանջը զգալիորեն սահմանափակում է աշխատավոր բնակչության քաղաքական իրավունքները: Նստակեցության ցենզի պահանջով, օրենսդրական հիմնարկների ընտրությանը մասնակցելու իրավունքից զրկվում են այն հարյուր հազարավոր բանվորները, վորոնք աշխատանք փնտրելով, հաճախակի փոխում են իրենց բնակատեղին (օրինակ սեզոնային գյուղատնտեսական բանվորները և գործազուրկները):

Ի տարբերություն բուրժուական սահմանադրություններից, մեր նոր, աշխարհի ամենադեմոկրատիկ Սահմանադրությունը ճանաչում է միայն տարիքի ցենզ, այն էլ ամենացածրը, վոր գոյություն ունի վորևէ տեղում:

Անգլիայում և ԱՄՆ-ում ցենզ են կոչվում նաև բնակչության պարբերական մարդահամարը և նրա գույքի ցուցակագրումը:





ԴԻՏՈՂՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՀԱՄԱՐ

ՎՐԻՊԱԿ

70-րդ էջի վերևից 3-րդ տողը կարդալ— ամբողջ սոցիալիստական հասարակարգի ամրապնդումը:

Կ(բ)Կ ԿԿ Հրատարակչություն — «Խորհրդ. Հայաստան»

Շարունակվում է 1937 թ.
բաժանորդագրությունը

# „ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ“

Լույս է տեսնում ամիսը 2 անգամ

Հ Կ (բ) Կ Կենտկոմի կուլտպրոպագանդայի և ագիտացիայի բաժնի հրատարակություն

ԲԱԺԱՆԵԳԻՆԸ՝

12 ամիսը . . . 6 ռուբ.
6 » . . . 3 »
3 » . . . 1 ռ. 50 կ.

Առանձին համարը՝ 25 կոպ.

Բաժանորդագրվելու համար դիմել՝

„Սոյուզպեչատ“-ի քաղաքային, շրջանային բյուրոներին և փոստի բաժանմունքներին: